# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ





ՄԱՐՏ

6

1964

ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



СОДЕРЖАНИЕ



Խմբագրության հասցեն.— *Երևան, ՀԿԿ Կենտկոմ, II հարկ, 71-րդ սենյակ, հեռախոս 2—52—78*

**Адрес редакции** — Ереван, ЦК КП Армении, II этаж, ком. 71, телефон 2-52-78.

Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

№ 6
ՄԱՐՏ
1964

ՀԿԿ Կենտկոմի գաղափարական աշխատանքի բաժին

Լույս է տեսնում ամիսը երկու անգամ

ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍԱԿԱՆ ԹԵՄԱՆԵՐ

# ՔԻՄԻԱՆ ԵՎ ԲԵՐՔԸ

*Քիմիական արդյունաբերության արագ և բուռն զարգացումը նոր և ավելի լայն հեռանկարներ է բացում մեր երկրի ժողովրդական տնտեսության շեշտակի վերելքի համար։*

*ՍՄԿԿ Կենտկոմի դեկտեմբերյան պլենումի որոշումներում նախատեսված է առաջիկա տարիներին իրականացնել ամբողջ գյուղատնտեսության համատարած քիմիացում։ Այդ խնդրի լուծումը հնարավորություն կտա լրիվ չափով բավարարել գյուղատնտեսական կուլտուրաների մշակության համար անհրաժեշտ հանքային պարարտանյութերի, ինչպես նաև մոլախոտերի, բույսերի վնասատուների ու հիվանդությունների դեմ պայքարելու նպատակով այլ քիմիկատների նկատմամբ եղած պահանջը։ Եթե 1913 թվականին Ռուսաստանում գյուղատնտեսության մեջ օգտագործվել է 200 հազար տոննայից էլ պակաս պարարտանյութ, ապա 1932 թվականին մեր երկրում օգտագործվել է 0,9 միլիոն տոննա, իսկ 1962 թվականին՝ 17,3 միլիոն տոննա։*

*Այժմ քիմիական արդյունաբերության առջև խնդիր է դրված 1965 թվականին հանքային պարարտանյութերի արտադրությունը հասցնել 35 միլիոն տոննայի, իսկ 1970 թվականին՝ 80 միլիոն տոննայի։*

*Հանքային պարարտանյութերի կիրառումը զգալիորեն մեծացել է նաև մեր ռեսպուբլիկայում։ Եթե ռեսպուբլիկան 1953 թվականին ստանում էր 56,6 հազար*

*տոննա հանքային պարարտանյութ, իսկ 1963 թվականին՝ 106 հազար տոննա, ապա 1965 թվականին այն կհասնի մինչև 170 հազար տոննայի, այսինքն գրեթե այնքան, որքան օգտագործել էր ամբողջ ցարական Ռուսաստանը 1913 թվականին։*

*Գիտահետազոտական կազմակերպությունների հաշվումները ցույց են տալիս, որ հանքային պարարտանյութերի այդպիսի քանակություն օգտագործելու դեպքում հնարավոր կլինի ռեսպուբլիկայում հացահատիկային կուլտուրաների բերքատվությունը յուրաքանչյուր հեկտարից բարձրացնել 6—8 ցենտներով, եգիպտացորենի հատիկի բերքը՝ 12—15 ցենտներով, կարտոֆիլինը՝ 40—50 ցենտներով։*

*Հանքային պարարտանյութերի արդյունավետությունն ավելի կբարձրանա ոռոգվող հողերում, որտեղ հացահատիկային կուլտուրաների միջին բերքատվությունը յուրաքանչյուր հեկտարից հնարավոր է բարձրացնել 8—13 ցենտներով, եգիպտացորենի հատիկինը՝ 20—25 ցենտներով, բամբակինը՝ 6—7 ցենտներով։ Այսպես, օրինակ, Բասարգեչարի արտադրական վարչության Նորակերտ գյուղի կոլտնտեսությունում հանքային պարարտանյութեր օգտագործելիս աշնանացան ցորենի բերքը 12,1 ցենտներից բարձրացավ մինչև 22,6 ցենտների, իսկ Գորիսում՝ 22,1 ցենտներից մինչև 32,2 ցենտների։ Հանքային պարարտանյութեր օգտագործելիս բարձր բերք է տալիս կարտոֆիլը։ Մարտունու արտադրական վարչության Սարուխան գյուղի փորձադաշտերում հանքային պարարտանյութեր օգտագործելիս կարտոֆիլի բերքը 112 ցենտներից բարձրացել է մինչև 208 ցենտների, իսկ Սպիտակի արտադրական վարչության Համզաչիմանի կոլտնտեսությունում՝ 163 ցենտներից մինչև 253 ցենտների։*

*Գորիսի սովխոզի պայմաններում ծխախոտի պարարտացման դեպքում տերևի բերքը 14,5 ցենտներից բարձրացել է մինչև 25 ցենտների, իսկ Շամշադինի արտադրական վարչության Բերդ գյուղում՝ 33,2 ցենտներից մինչև 52,4 ցենտների։*

*Սակայն նշված բերքի հավելումը հնարավոր է ստանալ միայն այն դեպքում, եթե հանքային պարարտանյութերի օգտագործման հետ մեկտեղ լայն պայքար ծավալվի հիվանդությունների և վնասատուների դեմ։*





*Գիտահետազոտական կազմակերպությունների կողմից հաշված է, որ միայն դաշտերի աղտոտությունից ամբողջ երկրում միջին հաշվով յուրաքանչյուր մեկ հեկտարից կորչում է մոտ 2 ցենտներ հացահատիկ։*

*Գյուղատնտեսությանը հսկայական վնաս են հասցնում նաև բույսերի հիվանդություններն ու վնասատուները, որոնց պատճառով բերքի կորուստը որոշ դեպքերում հասնում է մինչև 15—20 տոկոսի։*

*Հասկանալի է, որ գյուղատնտեսության զարգացումը անիմաստ է պատկերացնել առանց ինսեկտիցիդների և հերբիցիդների լայն կիրառման։ Պետք է նշել, որ հանքային պարարտանյութերի բարձր նորմաներով օգտագործումը ստեղծում է նաև բարենպաստ պայմաններ մոլախոտերի զարգացման համար, հատկապես, երբ խախտվում է հողի մշակման և ագրոտեխնիկական կանոնների ու հանքային պարարտանյութերի կիրառման ժամկետները։ Գյուղատնտեսության աշխատողների խնդիրն է լայն կերպով արտադրության մեջ կիրառել քիմիական արդյունաբերության կողմից արտադրվող հերբիցիդները, որոնք ոչ միայն կնպաստեն մոլախոտերի ոչնչացմանը, այլև զգալիորեն կիջեցնեն մոլախոտերի դեմ պայքարի հետ կապված աշխատանքի ծախսերը։ Շատ հերբիցիդներ միաժամանակ հանդիսանում են նաև բույսերի աճի ազդակ։ Այսպես, գյուղատնտեսական ինստիտուտում ստացված կրոտիլին հերբիցիդը ոչ միայն ոչնչացնում է մոլախոտերին, այլև բարձրացնում է հացահատիկային կուլտուրաների բերքատվությունը 1—1,5 ցենտներով։*

*Պարտիայի Կենտկոմի դեկտեմբերյան պլենումի որոշումներում նախատեսված է երկրի ոռոգվող շրջանները ապահովել պոլիէթիլենային և պոլիմերային նյութերով՝ ոռոգվող դաշտերի առավել դժվար և աշխատատար պրոցեսները ավտոմատացման ենթարկելու համար։ Ոռոգվող երկրագործությունում քիմիայի կիրառումը հնարավորություն կտա դուրս մղել ձեռքի աշխատանքը, իջեցնել մթերքների ինքնարժեքը, տնտեսել միլիարդավոր խորանարդ մետր ջուր ի հաշիվ ոռոգվող ցանցերում ինֆիլտրացիայի կրճատման, և արմատապես բարելավել բույսերի ջրամատակարարման ռեժիմը։*

*Գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվության բարձրացման կարևոր միջոց են միկրո-պարարտանյութերը, որոնք կարելի է օգտագործել տարբեր ձևով։*

Մի դեպքում դրանք կարելի է անմիջապես վարի ժամանակ մտցնել հողի մեջ, մեկ ուրիշ դեպքում կատարել բույսերի արմատային սնուցում, կամ թե ցանքից առաջ բույսերի սերմերը թրջել միկրո-պարարտանյութեր պարունակող թույլ լուծույթով։

Մեր ինստիտուտում կատարված փորձերը ցույց են տալիս, որ նախացանքային շրջանում բույսերի սերմերը միկրո-պարարտանյութեր պարունակող լուծույթով թրջելիս երգիպտացորենի կողրերի բերքատվությունը տարբեր շրջաններում բարձրանում է մեկ հեկտարին 8—27 ցենտներով, կարտոֆիլինը՝ 18—40 ցենտներով, շաքարի ճակնդեղինը՝ 25—42 ցենտներով։ Նկատվել է որ դրա հետ մեկտեղ բարձրանում է նաև բույսերի դիմադրողականությունը։

ՍՄԿՊ Կենտկոմի դեկտեմբերյան պլենումը քիմիական արդյունաբերության առաջ խնդիր է դրել ընդարձակել կոնցենտրիկ և բարդ պարարտանյութերի արտադրությունը։ Այժմ մեր երկրում հիմնականում արտադրվում է 6—7 տեսակ պարարտանյութ, որոնց մեծ մասը սննդանյութերի ցածր պարունակություն ունի։ Ուստի կոնցենտրիկ և բարդ պարարտանյութերի արտադրությունը հնարավորություն կտա ոչ միայն կրճատել պարարտանյութերի պահպանման և տեղափոխման ծախսերը, այլև մեծ չափերով բարձրացնել մշակվող կուլտուրաների բերքատվությունը։

Հարկավոր է լայնորեն օգտագործել նաև յուրաքանչյուր կոլտնտեսության ներքին ռեսուրսները։ Ցանկացած կոլտնտեսությունում և սովխոզում կարելի է ստեղծել սեփական պարարտանյութերի ֆաբրիկա։

Գյուղատնտեսական պրակտիկայով ապացուցվել է, որ հանքային պարարտանյութերն առավել բարձր արդյունք կարող են տալ միայն այն դեպքում, երբ դրանք հողին տրվում են օրգանական պարարտանյութերի հետ մեկտեղ։

Ակադեմիկոս Դ. Ն. Պրյանիշնիկովը բազմաթիվ անգամ նշում էր, որ հողում մտցված ազոտի, ֆոսֆորի և կալիումի որոշ մասը առաջին իսկ տարում անցնում է հատիկի և ծղոտի մեջ, որոնց մի մասը օգտագործվում է որպես կեր և փռվածք։ Հետևաբար գոմաղբի օգտագործումը կնշանակեր հողին կրկին վերադարձնել այն էլեմենտների մի մասը, որը նախկինում ստացվել էր քիմիական արդյունաբերությունից։



Ցավոք սրտի գոմաղբի օգտագործման և պահպանման գործին շատ տեղերում դեռևս անբարեխիղճ վերաբերմունք են ցույց տալիս։

Տնտեսությունները յուրաքանչյուր տարի թանկարժեք հանքային պարարտանյութեր ձեռք բերելու համար կատարում են մեծ ծախսեր, որոնց մի մասը կարող էր համալրվել. ինչպես գոմաղբի, այնպես էլ միզանյութի ճիշտ և լրիվ օգտագործման դեպքում։

Հազվագյուտ դեպքում է, երբ տնտեսությունները օգտագործում են այնպիսի արժեքավոր և բարձր կոնցենտրիկ պարարտանյութ, ինչպիսին է թռչնաղբը։ Ամենուրեք անտեսվում է մոխրանյութերի օգտագործումը։ Շատ տնտեսություններում անհոգի վերաբերմունք են ցույց տալիս տորֆային կոմպոստների պատրաստման գործին։

Տեղին է նշել, որ հանքային և օրգանական պարարտանյութերը չեն տա այն սպասվելիք արդյունքը, եթե դրանք օգտագործվեն ցածր ագրոտեխնիկայի մակարդակով։

Պարարտանյութերը արդյունավետ օգտագործելու ուղեցույց է ագրոքիմիական քարտեզը, որտեղ արտացոլված են մատչելի սննդանյութերով հողի ապահովվածության տվյալները և յուրաքանչյուր կուլտուրայի համար անհրաժեշտ պարարտանյութերի դոզան։

Առանց ագրոքիմիական քարտեզների պարարտանյութերի օգտագործումը կհանգեցնի նրան, որ մի դեպքում հողի մեջ կմտցվեն պահանջից քիչ պարարտանյութեր և չի ստացվի հնարավոր բարձր բերք, մեկ ուրիշ դեպքում, հաշվի չառնելով սննդանյութերով հողի ապահովվածությունը, կտրվի պարարտանյութերի ավելի մեծ դոզա, դրանով իսկ կատարելով ավելորդ ու անիմաստ ծախսեր և միաժամանակ վատացնելով մթերքների որակը։ Հայտնի է, որ ազոտական միակողմանի պարարտանյութեր օգտագործելիս զգալի կերպով ընկնում է կարտոֆիլի, շաքարի ճակնդեղի և ծխախոտի որակը։

Այսպիսով, պարարտանյութերի խելացի և ճիշտ օգտագործումը հնարավորություն կտա շեշտակի կերպով բարձրացնել բոլոր գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվությունը։

Հ. ՊԵՏՐՈՍՅԱՆ
Հողագիտության և ագրոքիմիայի գիտահետազոտական ինստիտուտի դիրեկտոր

# ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ԻՆՏԵՆՍԻՎԱՑՄԱՆ ՀԱՄԱՐ

*Մեր պարտիայի Կենտրոնական կոմիտեի դեկտեմբերյան և փետրվարյան պլենումների որոշումները ջերմորեն ընդունեցին ռեսպուբլիկայի աշխատավորները։ Նրանք պարտավորվեցին ջանք չխնայել պարտիայի և կառավարության առաջադրանքները հաջող կատարելու համար։*

*Հայաստանի կոմպարտիայի Կենտկոմի օրերս տեղի ունեցած պլենումը պրակտիկ միջոցառումներ մշակեց ՍՄԿՊ Կենտկոմի փետրվարյան պլենումի որոշումները կենսագործելու, գյուղատնտեսության ինտենսիվացման վերաբերյալ պարտիայի և կառավարության առաջադրանքը անթերի կատարելու մասին։ Այդ կապակցությամբ խնդիր դրվեց արդյունավետ օգտագործել մեր ռեսպուբլիկայի ներքին հնարավորությունները ու ռեզերվները, ավելացնել քիմիական պարարտանյութերի արտադրությունը։*

*Ակնհայտ է, որ վերջին տասը տարում ռեսպուբլիկայի գյուղատնտեսությունն զգալի վերելք է ապրել. շաքարի ճակնդեղի արտադրությունն ավելացել է 1,6 անգամ, բանջարաբոստանայինը՝ 2, խաղողինը՝ 3,4, պտղինը՝ 1,6 անգամ։ Անասնապահական մթերքների արտադրությունը անցյալ տարի, 1953 թվականի համեմատությամբ, աճել է մսինը՝ 1,5 անգամ, կաթինը և բրդինը՝ 1,8, ձվինը՝ 2,2 անգամ։ Նկատելիորեն աճել է հանրային անասունների գլխաքանակը։ Խաղողի և պտղատու այգիների տարածությունը ընդարձակվել է մոտ երկու անգամ։*

*Սակայն շատ իրավացիորեն պլենումը նշեց, որ մինչև այժմ լրիվ չեն օգտագործվել մեր կոլտնտեսությունների ու սովխոզների, սոցիալիստական գյուղատնտեսության ընդերքում եղած ռեզերվները։ Գյուղատնտեսական առանձին մթերքների արտադրության ավելացումը հիմնականում լուծվել է ցանքատարածությունների ընդարձակման հաշվին։ Եվ դա հասկանալի է։ Այդ ժամանակ անհրաժեշտ միջոցներ չկային գյուղատնտեսությունը լայնորեն քիմիացնելու, նոր տեխնիկայի արտադրության և ոռոգման ցանցը մեծ մասշտաբներով ընդարձակելու համար։ Այժմ, երբ պետությունը կարող է խոշոր միջոցներ տրամադրել այդ նպատակի համար, միանգամայն հնարավոր է կարճ ժամանակամիջոցում գյուղատնտեսական մթերքների արտադրության զգալի ավելացման խնդիրը լուծել բերքատվության և մթերատվության բարձրացման, գյուղատնտեսական արտադրության լայն ինտենսիվացման միջոցով։*



*Այդ խնդրի լուծումը ներկայումս պրակտիկորեն հնարավոր է դառնում, քանի որ հիմնովին փոխվել է կոլտնտեսությունների ու սովխոզների նյութատեխնիկական բազան։ Դրանում համոզվելու համար ավելորդ չենք համարում բերել մի քանի տվյալներ։ Անցած տասը տարիների ընթացքում ռեսպուբլիկայի կոլտնտեսություններում ու սովխոզներում ֆիզիկական տրակտորների քանակը ավելացել է 2.800 հատով, կամ այն աճել է 202 տոկոսով, հացահատիկային կոմբայնները՝ 189 տոկոսով։ Եթե 1953 թվականին չկար ոչ մի եգիպտացորենահավաք կոմբայն, ապա այժմ ռեսպուբլիկայի կոլտնտեսություններն ու սովխոզները ունեն մոտ 400 կոմբայն։ Ներկայումս կոլտնտեսությունների ու սովխոզների պարկում մի քանի անգամ ավելի շատ ապրանքատար ավտոմեքենա կա, քան կար տասը տարի առաջ։ Մեր ռեսպուբլիկայի գյուղատնտեսության մեջ 1953 թվականին ծախսվել է 350 հազար կիլովատ-ժամ էլեկտրաէներգիա, իսկ անցյալ տարի այն կազմեց 208 միլիոն։ Հսկայական է գյուղատնտեսության մեջ կապիտալ միջոցների ներդրման տարբերությունը։ Եթե նոր տեխնիկայի ձեռք բերման, ջրաշինարարական աշխատանքների, հանքային պարարտանյութերի և այլ աշխատանքների համար ռեսպուբլիկայի կոլտնտեսություններին ու սովխոզներին տասը տարի առաջ տրամադրվել է 22 միլիոն, ապա անցյալ տարի՝ 58 միլիոն ռուբլի։ Այդ նույն ժամանակամիջոցում ոռոգվող հողերի տարածությունը ընդարձակվել է շուրջ 60 հազար հեկտարով, արմատավորվել է խոտհարքների, արոտավայրերի և մարգագետինների ջրման ու բարելավման գործը։ Կիրառված միջոցառումները տվել են սպասվելիք արդյունքները։ Տասը տարվա ընթացքում միայն կոլտնտեսությունների եկամուտը 53 միլիոն ռուբլուց հասել է 116 միլիոն ռուբլու, մեկ աշխօրի արժեքը 86 կոպեկից՝ մեկ ռուբլի 80 կոպեկի, այդ թվում մեկ*

աշխօրի դրամական վարձատրությունը 34 կոպեկից՝ մեկ ռուբլի 7 կոպեկի։ Ահա թե պարտիական, սովետական, գյուղատնտեսական օրգանները, կոլտնտեսականներն ու սովխոզների բանվորները ինչի հիման վրա պետք է լուծեն գյուղատնտեսական արտադրությունը ինտենսիվացման մեթոդով վարելու հարցը։

Գյուղատնտեսական արտադրության ինտենսիվացումը մեր ռեսպուբլիկայում հիմնականում պետք է ընթանա երեք ուղղությամբ։

Առաջին՝ հողագործության և անասնաբուծության լայն քիմիացման, Երկրորդ՝ ոռոգվող հողատարածությունների ընդարձակման և Երրորդ՝ արտադրության մեջ կոմպլեքս մեքենայացումը արմատավորելու ուղիով։

Նշված երեք ուղղությունների հետագա անշեղ զարգացումը ապահովելու համար որոշված է զգալիորեն ավելացնել հանքային և օրգանական պարարտանյութերի, հերբիցիդների, թունաքիմիկատների և քիմիական բազմաթիվ այլ պրեպարատների արտադրությունը, այն հաշվով, որ լիովին ապահովվեն հողագործության և անասնաբուծության լրիվ քիմիացման պահանջները։ Մոտակա տարիներին դաշտավարության և անասնապահության մեջ պետք է լայնորեն արմատավորվի կոմպլեքս մեքենայացումը, սիստեմատիկաբար կընդարձակվեն ջրովի հողատարածությունները և կյուրացվեն աղակալած հողերը, բոլոր կոլտնտեսություններն ու սովխոզները ցանքը կկատարեն բարձր բերքատու սորտերով ու սերմերով։ Անասնաբուծության բնագավառում կշարունակվեն աշխատանքները հանրային անասունների տոհմային գործը բարելավելու ուղղությամբ, միաժամանակ կբարձրացվի կաթի յուղայնությունը։

Առաջիկայում հետևողականորեն կմասնագիտացվի գյուղատնտեսական արտադրությունը ինչպես ըստ գոտիների, տնտեսությունների, այնպես էլ տնտեսությունների ներսում, կբարձրացվի կոլտնտեսականների և սովխոզների բանվորների նյութական շահագրգռվածությունը։ Աշխատանքի մեկ միավորի և միջոցների մինիմալ ծախսման միջոցով կստացվի մաքսիմում քանակի արտադրանք։

Ինտենսիվացումը, որպես կոլտնտեսային-սովխոզային արտադրության զարգացման գլխավոր ուղի,



հատուկ նշանակություն է ստանում հատկապես մեր ռեսպուբլիկայի համար։ Միայն բարձր ինտենսիվացումը (ոռոգման ցանցի լրիվ և ռացիոնալ օգտագործումը, գյուղատնտեսության քիմիացումն ու մեքենայացումը) հնարավորություն կտա ռեսպուբլիկայի սակավահողային և հաճախակի կրկնվող երաշտի պայմաններում, ամեն մի հեկտարից ստանալ այնքան բերք, որքան ընդունակ է տալու հողը։

Վերջին երեք տարում հանքային պարարտանյութերի քանակը ռեսպուբլիկայում ավելացել է 32 տոկոսով։ Սակայն պետք է խոստովանել, որ այդ քանակությունը չի ապահովում գյուղատնտեսության պահանջը։ Այդ է պատճառը, որ անցյալ տարի, կոլտնտեսություններն ու սովխոզները հանքային պարարտանյութերը հող մտցրին հիմնականում տեխնիկական կուլտուրաների ցանքատարածություններում, մասամբ էլ խաղողի և պտղատու այգիներում, իսկ հացահատիկային կուլտուրաների միայն 13 տոկոսը ստացավ հանքային պարարտանյութ։ Ընթացիկ տարում նախատեսվում է հողին տրվող հանքային պարարտանյութերի քանակը հասցնել 120 հազար, 1965 թվականին՝ 170 հազար, իսկ 1970 թվականին 600—700 հազար տոննայի։ Դրան զուգընթաց մեծ չափով կօգտագործվեն նաև օրգանական պարարտանյութերը։ Նշանակալի չափով կավելանա թունաքիմիկատների կիրառումը գյուղատնտեսական կուլտուրաների հիվանդությունների և վնասատուների դեմ պայքարելու գործում։

Գյուղատնտեսության քիմիացումը հրամայական պահանջ է դնում այդ գործը կատարելու համար պատրաստել մասսայական կադրեր։

Ռեսպուբլիկայի գյուղատնտեսական մթերքների արտադրության և մթերումների մինիստրությունը, «Հայգյուղտնտտեխնիկայի» ռեսպուբլիկական միավորումը և արտադրական վարչությունները արդեն երրորդ ամիսն է, ինչ ձեռնամուխ են եղել նշված կադրերի պատրաստմանը։ Մինչև մարտ ամսվա վերջը ավելի քան 20 հազար մարդ կտիրապետի հողագործության, 15 հազար մարդ՝ անասնաբուծության ու մոտ 4000 մարդ՝ գյուղատնտեսական աշխատանքների մեքենայացման և այլ ճյուղերի քիմիացման հիմունքները։

Գյուղատնտեսական տեխնիկայի օգտագործումը

բարելավելու և նորոգման ինքնարժեքը իջեցնելու նպատակով «Հայգյուղտնտեխնիկայի» ռեսպուբլիկական միավորումը պարտավորվել է ընթացիկ տարում իր վրա վերցնել 110 (հատկապես տնտեսապես ետ մնացող) կոլտնտեսությունների կոմպլեքս տեխնիկական սպասարկման և 300 տնտեսության տեխնիկայի վերանորոգման գործը։ Այդ խնդիրը իրականացնելու համար ներկայումս կազմակերպվում է տեխնիկական սպասարկման 33 կայան, առանձնացվում է 60 շարժական արհեստանոց։ Բացի այդ, մի շարք կոլտնտեսություններում ու սովխոզներում կկազմակերպվեն կոմպլեքս մեքենայացման բրիգադներ և օղակներ, որոնց աշխատանքի հարուստ փորձը շատ դանդաղ է ուսումնասիրվում և արմատավորվում մեր ռեսպուբլիկայում։

Հողագործության և անասնաբուծության ինտենսիվացումը հեռու ապագայի գործ չէ, այն հնարավորություն կտա հենց այս տարի նկատելիորեն ավելացնել գյուղատնտեսական մթերքների արտադրությունը։ Հաշվի առնելով եղած հնարավորությունները, ռեսպուբլիկայի կոլտնտեսություններն ու սովխոզները պարտավորվել են 1964 թվականին արտադրել մոտ 268 հազար տոննա հացահատիկ, 110 հազար տոննա շաքարի ճակնդեղ, 13 հազար տոննա ծխախոտ, 196 հազար տոննա բանջարեղեն, 191 հազար տոննա կարտոֆիլ, 207 հազար տոննա խաղող, 59 հազար տոննա պտուղ, 40 հազար տոննա միս, 338 հազար տոննա կաթ, 4,3 հազար տոննա բուրդ, 192 միլիոն հատ ձու։

Արտադրական վարչությունների, կոլտնտեսությունների, սովխոզների և գյուղատնտեսական հումքը վերամշակող ձեռնարկությունների ագիտատորների խնդիրն է՝ ամեն մի կոլտնտեսականի ու սովխոզի բանվորի հասցնել գյուղատնտեսության ինտենսիվացման անհրաժեշտության մասին պարտիայի և կառավարության խոսքը, հանգամանորեն պարզաբանել արտադրական վարչության, կոլտնտեսության, սովխոզի առջև դրված կոնկրետ խնդիրները ու դրանց իրականացման ուղիները։

Ռ. ՓԱՇԻՆՅԱՆ

ՀԿՊ Կենտկոմի գյուղատնտեսության ղեկավարման բյուրոյի գյուղբաժնի վարիչի տեղակալ



# Ս Ր Տ Ա Կ Ի Ց
# ԲԱՐԵԿԱՄՆ ՈՒ ԽՈՐՀՐԴԱՏՈՒՆ

Երևանի Վ. Ի. Լենինի անվան էլեկտրամեքենաշինական գործարանի № 9 արտադրամասում է աշխատում վարպետ Մ. Մանուկյանը։ Նա իր անմիջական պարտականությունների հետ միասին ագիտացիոն-մասսայական աշխատանք է կատարում արտադրամասի բանվորների շրջանում։ Ագիտատորը հատուկ ուշադրություն է դարձնում, որ բոլոր բանվորները, հատկապես երիտասարդները, գիտակից վերաբերմունք ունենան դեպի աշխատանքը, ընկերական օգնություն ցույց տան միմյանց և անհաշտ լինեն դեպի խոտանարարը և անկարգապահը։ Իր զրույցներում ագիտատորը տեխնոլոգիայի կատարելագործման, աշխատանքային պայմանների բարելավման, առաջավոր փորձի ուսումնասիրման և տարածման հարցերից բացի, մեծ տեղ է տալիս այդ պլաններն իրականացնող մարդու կոմունիստական դաստիարակությանը։ Նա իր անձնական օրինակով ոգևորում է մարդկանց։ Այդ է պատճառը, որ բանվորները նրան դիմում են ամենատարբեր հարցերով, հաստատ համոզված լինելով, որ ագիտատորը, անկախ հարցերի բնույթից, դրանց կպատասխանի անկեղծորեն և կօգնի հասկանալու իրենց համար չպարզված հարցերը։

Ագիտատոր Մ. Մանուկյանը համբերատար կերպով զբաղվում է սկսնակ բանվորների դաստիարակությամբ, հաշվի առնում նրանց ձգտումները և բնավորությունը։

... Դա մեկ տարի առաջ էր։ № 9 ցեխի արտադրամաս աշխատանքի եկավ մի երիտասարդ՝ Ի. Գալաջյանը։ Իշխանը վատ շրջապատ էր ունեցել, կատարել էր հանցանք և ընկել բանտ, ճաշակել շատ դառնություններ, հետո նոր միայն աշխատանքի եկել գործարան։ Այստեղ նա իրեն լավ չէր պահում, կոպտում էր մարդկանց, վիրավորում։ Մի անգամ նա հարբած ներկայանում է գործարան, կռվի բռնվում տղաների հետ։ Իհարկե, ագիտատոր Մանուկյանը կարող էր նրան հեռացնել տալ աշխատանքից, և դա ոչ մի դժվարություն չէր ներկայացնում, ոչ ոք Իշխանին չէր պաշտպանի։ Բայց մի՞թե այդ էր ելքը։ Իշխանին պաշտպանելու

անշնորհակալ խնդիրը, ինչպես շատերն էին կարծում, իր վրա վերցրեց արտադրամասի ագիտատորը։ Արտադրության լավագույն աշխատողը և խելացի դաստիարակը վճռեց մինչև վերջ պայքարել երիտասարդ տղայի համար, օգտագործելով դաստիարակչական աշխատանքի բոլոր միջոցները։ Նա Իշխանի հետ գնում է նրանց տուն, ծանոթանում ծնողների ու հարազատների հետ, խորհրդակցում նրան ճիշտ ուղու վրա կանգնեցնելու մասին։ Դրանից հետո ագիտատորը հաճախ հանդիպում է ծնողների հետ և նրանք միասին հետևում են Իշխանի յուրաքանչյուր արարքին, խորհուրդներ տալիս ու օգնում նրան, որ լավ մարդ դառնա։ Ագիտատորի խորհրդով նա շուտով ընդգրկվում է ընթացիկ քաղաքականությունն ուսումնասիրող քաղխմբակում։ Այդ ամենը բարերար ազդեցություն են թողնում նրա վրա։ Եվ որքա՜ն ուրախության պահեր ապրեց ագիտատոր Մանուկյանը՝ տեսնելով Իշխանին հետզհետե ոչ միայն ուղղված, այլև արտադրամասի առաջավոր փականագործներից մեկը դարձած։

№ 9 արտադրամասի գեներատորների և գրգռիչների հավաքման աշխատամասի ագիտատորի աշխատանքային կենսագրությունում շատ են այդպիսի վառ էջերը։ Ինքն էլ անփորձ էր, երբ 1952 թվականին ոտք դրեց գործարան։ Մի շարք ընկերների օգնությամբ փականագործի աշակերտից այսօր նա դարձել է վարպետ և տարիների ընթացքում իր ձեռք բերած փորձն ու հմտությունը սիրով հաղորդում է բանվորներին։

Մանուկյանը անհանգիստ բնավորություն ունի։ Նա անընդհատ պրպտում է, խորհում։ Իր զրույցների ժամանակ նա բանվորների ուշադրությունը հրավիրում է արտադրական այս կամ այն պրոցեսի կատարելագործման անհրաժեշտության վրա, առաջարկում զբաղվել այս կամ այն պրոցեսի կատարելագործմամբ, սիստեմատիկաբար հետևում նրանց աշխատանքների ընթացքին, ոգևորում և մասնագիտական խորհուրդներ տալիս նրանց։

Արտադրամասի մի քանի բանվորներ լավ չէին տիրապետում իրենց մասնագիտություններին և հաճախ ցածրորակ արտադրանք էին տալիս։ Նա հմտորեն մոտենալով յուրաքանչյուրին, ամենայն համբերությամբ նրանց ցույց է տալիս աշխատանքի թերի կողմերը, բացատրում։ Դժվար էր «ՍԳԴ—102» տիպի գեներատորի գրգռիչի խարիսխի օդափոխիչի և կորպուսի հավաքման պրոցեսը։ Ա. Զեշյանը որոշեց փոխել այն, բայց ոչինչ չէր ստացվում։ Տեղամասի ագիտատորը օգնության եկավ նրան, զննեց երիտասարդի ձեռքի կորպուսն ու խորհուրդներ տվեց։ Կարճ ժամանակ անց Անդրանիկը ներկայացավ ձեռնարկության նորարարության և գյուտարարության բյուրո և հանձնեց նորարարական իր առաջարկը։ Այն շուտով ներդրվեց արտադրության մեջ։

Ագիտատոր Մանուկյանը ամեն կերպ աշխատում է ագիտացիոն զրույցները դարձնել կոնկրետ գործերի նախաձեռնման և կազմակերպման միջոց ու այդ ճանապարհով բարձրացնել բանվորների աշխատանքային և քաղաքական ակտիվությունը։ Եվ պատահական չէ, որ բոլոր աշխատողները իրենց արտադրական պլանները սիստեմատիկաբար կատարում ու գերակատարում են, պայքարում արտադրության բարձր կուլտուրայի և աշխատանքի բարձր արտադրողականության համար։

Թե երիտասարդ, թե տարեց բանվորները սիրում են իրենց ագիտատորին։ Իսկ Մ. Մանուկյանը չի չարաշահում ունկնդիրների վստահությունը, այլ լուրջ ուշադրությամբ է վերաբերվում նրանց հետ։ Մարդու համար չկա ավելի մեծ հատուցում, ասում է նա, քան այն, որ աշխատանքային ընկերներդ վստահում, հավատում և սիրում են քեզ, քեզ համարում են իրենց բարեկամն ու խորհրդատուն։

Այո, ագիտատոր Մ. Մանուկյանը դարձել է գործարանի շատ բանվորների սրտակից բարեկամն ու խորհրդատուն։

Այնպիսի ագիտատոր, ինչպիսին Մ. Մանուկյանն է, շատ կան էլեկտրամեքենաշինական գործարանում, և դա բացատրվում է ոչ թե հատուկ հանգամանքներով կամ երջանիկ պատահականությամբ, այլ նրանով, որ ցեխային պարտիական կազմակերպությունը մշտապես զբաղված է ագիտատորների դաստիարակությամբ։ Արտադրամասում ագիտատորը դարձել է այն հարվածային ուժերից մեկը, որը օգնում է պարտիական կազմակերպությանը՝ նոր հաջողությունների հասնելու գործում։

Ս. ՍԱՂԱԹԵԼՅԱՆ
ՀԿՊ Երևանի քաղկոմի հրահանգիչ

## ԴԻՏՈՂԱԿԱՆ ԱԳԻՏԱՑԻԱՆ ԿՈԼՏՆՏԵՍՈՒԹՅՈՒՆՈՒՄ

ՀԱՐԳԵԼԻ ԱԳԻՏԱՏՈՐՆԵ՛Ր:

Դիտողական ագիտացիա կազմակերպելու փորձի փոխանակման կարգով տպագրում ենք Բելգորոդի մարզի Բորիսովկիի արտադրական վարչության Կոմինտերնի անվան կոլտնտեսության պարտկազմակերպության քարտուղար Ա. Կովալենկոյի հոդվածը: Այս հոդվածը լույս է տեսել ՍՄԿՊ Կենտկոմի «Պարտիյնայա ժիզն» ամսագրի 1964 թվականի առաջին համարում:

Խնդրում ենք ուղարկել տեղեկություններ այն մասին, թե ինչպես է դիտողական ագիտացիան կազմակերպված ձեզ մոտ, այն կոլտնտեսությունում և սովխոզում, որտեղ աշխատում եք դուք և ինչ եք մտադրվել անել առաջիկայում այդ ուղղությամբ:

*Տրակտորիստ Անատոլի Սազոնենկոն կոպտում էր ընկերներին, երբեմն աշխատանքի էր գալիս հարբած վիճակում: Նրան շատ էին դիտողություն արել, զրուցել էին հետը, բայց Սազոնենկոն ուշադրություն չէր դարձնում.*

*— Մեծ բան է պատահել՝ խիստ եմ խոսել, հարյուր գրամ խմել եմ...*

*Չէին օգնում նաև կարգապահական տույժերը: Մի անգամ, երբ Անատոլին աղմուկ սարքեց կալում, ագիտատորը գրադարանի վարիչ Տատյանա Սիչովայի հետ լույս ընծայեց երգիծական թերթիկ, որտեղ զետեղեցին մեխանիզատորին խարազանող ծաղրանկար: Թերթիկը կարդաց ամբողջ բրիգադը: Սազոնենկոն խուսափում էր ընկերներից: Հաջորդ օրը նա գտավ Սիչովային:*

*— Տատյանա, թերթիկը հանիր:*

*— Իսկ ինչպե՞ս կլինի քո հարբեցողության հետ:*

*— Երդվո՛ւմ եմ: Մեխանիզատորի խո՛սք եմ տալիս:*

*Թերթիկը հանվեց: Իսկ մեխանիզատորը իր խոստումը կատարեց: Այլևս նրանից չէր լսվում կոպիտ խոսք, նա չէր խմում:*



*Մենք մեծ նշանակություն ենք տալիս երգիծական թերթիկներին և դիտողական ագիտացիայի մյուս տեսակներին: Ակումբներում, անասնապահի տանը, բրիգադներում, ֆերմաներում փակցնում ենք պլակատներ, կոչեր, տրանսպարանտներ, դիագրամներ, ծաղրանկարներ:*

*Դիտողական ագիտացիան մեր ագիտատորներին օգնում է յուրաքանչյուր կոլտնտեսականի գիտակցությանը հասցնելու պարտիայի խոսքը, լավ, օգտակար փորձը, արժեքավոր նախաձեռնությունը: Այդ ագիտացիայի օգնությամբ մենք լայնորեն հրապարակում ենք մրցության արդյունքները, փառաբանում ենք կոլտնտեսային արտադրության առաջավորներին:*

*Դիտողական ագիտացիայով մեզ մոտ զբաղվում են գրադարանավարուհի Տատյանա Սիչովան և ակումբի վարիչ Նինա Կոստենկոն: Նրանց օգնում են ուսուցիչները: Այդ նրանց շնորհիվ է, որ յուրաքանչյուր ֆերմայում և դաշտակայանում մենք միշտ ունենք պարտիայի և կառավարության որոշումները, ՍՄԿՊ XXII համագումարի նյութերը, պարտիայի ծրագիրը պրոպագանդող պլակատներ ու կոչեր: Պլակատները նվիրված են նոր մարդու դաստիարակության պրոբլեմներին, մարդկանց գիտակցության մեջ անցյալի մնացուկների դեմ պայքարին, գյուղատնտեսական արտադրության առաջավորների հաջողություններին:*

*Շատ պլակատներ, տրանսպարանտներ և դիագրամներ նվիրված են վերջին հինգ տարում կոլտնտեսության ձեռք բերած հաջողություններին: Անասնապահի տանը գեղեցիկ են ձևավորված «Կոմունիզմ կառուցողի բարոյական կոդեքսը», «Գյուղի յուրաքանչյուր աշխատավորի՝ մեխանիզատորի մասնագիտություն», «1963 թվականի փարոսները» պլակատները: Բրիգադներում փակցված են դաշտավարների և անասնապահների պարտավորությունները, դրանց կատարման գրաֆիկները: Կաթնապրանքային առաջին ֆերմայում, հենց մուտքի մոտ, կարելի է կարդալ այսպիսի կոչեր. «Յուրաքանչյուր ֆուրաժային կովից ստանալ 2.200 կիլոգրամ կաթ», «Մեր արժանի ավանդը մուծենք 680 հազարի մեջ» (680 հազարը կոլտնտեսության տարեկան եկամտի*

պլանն է)։ Այսպիսի պարտավորություն-պլակատներ կան բոլոր ֆերմաներում ու բրիգադներում։

Մեծ է դիտողական ագիտացիայի դերը առաջավոր փորձի պրոպագանդման գործում։ Նրա օգնությամբ լավագույն առաջավորների փորձը ավելի շուտ է դառնում բոլոր կոլտնտեսականների սեփականությունը։ Կթվորուհի Մելանիա Լունևան կոլտնտեսությունում ապահովել է ամենաբարձր կաթնատվությունը։ Նրա փորձին նվիրեցինք հատուկ պլակատ, որի մեջ մանրամասն պատմեցինք, թե նա ինչպես է խնամում անասունները, բարելավում կերի որակը, կազմում կերաբաժինները։ Հատուկ թերթիկներ նվիրեցինք խոզապահուհի Մարիա Չերնիշևայի, տրակտորիստ Նիկոլայ Բոնդարի և շատ ուրիշների աշխատանքի փորձին։ Դա նպաստեց աշխատանքի արտադրողականության բարձրացմանը, առաջավորների փորձի արմատավորմանը։

Ֆերմաներում և դաշտային բրիգադներում կան ցուցանիշների տախտակներ։ Դրանք լուսաբանում են սոցիալիստական մրցության ընթացքը։ Մի ժամանակ երկրորդ բրիգադում ցուցանիշների տախտակն անշուք տեսք ուներ, լրացվում էր անփույթ, թվերը միշտ հնացած էին լինում։ Ինձ մոտ եկավ կոլտնտեսականներից մեկը և ասաց.

— Դա ոչ թե ցուցանիշների տախտակ, այլ պատուհաս է։ Նայում ես դրան ու ջղայնանում։ Մի՞թե կարելի է այդպիսի գործը անշնորհք մարդկանց հանձնարարել։

Կոլտնտեսականն իրավացի էր։ Դիտողական ագիտացիայով պետք է զբաղվեն այնպիսի մարդիկ, որոնք ձևամոլներ չեն։ Անշնորհք մարդկանց պատրաստած ստենդներն ու դիագրամները օգուտ չեն բերի։ Նույն երկրորդ բրիգադի կաթնապրանքային ֆերմայում ստեղծել էինք արտաքինից գեղեցիկ ստենդ։ Բայց անասնապահները դրան չէին մոտենում։ Ինչումն է բանը։ Պարզվեց, որ ստենդի թվերն ու փաստերը կապված չեն ֆերմայի մարդկանց գործերի հետ, չեն խոսում անասնապահների սրտին մոտ կոնկրետ հարցերի մասին։ Դա միայն վրդովեցնում էր մարդկանց։ Մենք կարգ ու կանոն ստեղծեցինք։ Ցուցանիշների տախտակն ամրացրինք ագիտատորներին։ Նրանք ձևավորում, խնամքով այդտեղ գրում են սոցիալիստական մրցության արդյունքների վերջին տվյալները։ Եվ այժմ ցուցանիշների տախտակները մեզ մոտ կարևոր դեր են խաղում։ Մրցությունը իսկապես հրապարակային է դարձել։



Բերքահավաքի ժամանակ մենք ամեն օր ամփոփում էինք կոմբայնային ագրեգատների սոցիալիստական մրցության արդյունքները։ Լավագույն մեխանիզատորների մասին գրում էինք պատի թերթում, նրանց նվիրում էինք թերթիկներ ու «կայծակներ», առաջավորներին հանձնում էինք կարմիր հուշադրոշներ։ Վերջիններս կարելի է տեսնել լավագույն կոմբայնավարների, տրակտորիստների, շոֆերների մեքենաների վրա։ Մենք սկսել ենք ամեն ամիս պարգևի հետ միասին կարմիր դրոշիկներ հանձնել լավագույն կթվորուհիներին, խոզապահուհիներին, թռչնապահուհիներին։

Մի քանի տարի առաջ, որպես կանոն, ստենդներն ու պլակատները ձևավորում էին վճարովի նկարիչները. դրանք էժան չէին նստում և օպերատիվ չէին։ Այժմ ստենդներն ու պլակատները պատրաստում ենք փոքր և, որ գլխավորն է, մեր ուժերով։

Դաստիարակչական աշխատանքում մեզ լավ են օգնում պատի թերթերը։ Նրանք ոչ միայն պրոպագանդում են առաջավորների փորձը, այլև խարազանում են ծույլերին, հարբեցողներին, աշխատանքի չներկայացողներին, խոտանարարներին, բոլոր նրանց, ովքեր խանգարում են առաջ ընթանալ, բարձրացնել արտելի տնտեսությունը։

Մեզ մոտ «Բերքի համար» պատի թերթը խմբագրում է ուսուցչուհի Աննա Կոնստանտինովնա Յակովլևան։ Ակտիվորեն են աշխատում խմբագրական կոլեգիայի անդամները՝ ուսուցչուհի Նատալյա Յակովլևնա Շևչենկոն, Տատյանա Ֆեոդորովնա Սիչովան և որոշ կոլտնտեսականներ։ Պատի թերթը լույս է տեսնում ամիսը երկու անգամ։

Մի օր, անասունների երեկոյան կթի ժամանակ, կթվորուհիներից մեկը քիչ կաթ էր ստացել մի կովից։





*Նրանից հետո այդ կովից ստացվեց ևս երեք հարյուր գրամ կաթ։*

*— Պա՛հ երեք հարյուր գրամ։ Չէ՞ որ դա դատարկ բան է,— զայրացավ կթվորուհին։ Պարզվեց, որ մյուս կովերից էլ նա կարող էր ավելի շատ կաթ ստանալ։*

*Մի քանի օր անց այդ մասին պատի թերթում գրվեց հոդված, որի վերնագիրն էր՝ «Արդյո՞ք դա դատարկ բան է»։ Հոդվածում հաշվարկներ էին կատարվել, թե ֆերման որքան կաթ պակաս կտա, եթե կթվորուհիները լրիվ չկթեն կովերին։ Թերթի այդ ելույթը կթվորուհիներին ստիպեց ավելի լավ աշխատել։*

*Բրիգադների պատի թերթերից բացի, ագիտատորները յուրաքանչյուր ֆերմայում ակտիվիստների օգնությամբ լույս են ընծայում «կայծակներ»։*

*№ 1 կաթնապրանքային ֆերմայում, օրինակ, այն լույս է ընծայում Նինա Գրիգորևնա Պիվնյովան։ Ակտիվիստուհին նկատում է ֆերմայի բոլոր թերությունները, աշխատանքից ուշացողներին, ընկերուհիներին կոպտողներին, վատ աշխատողներին։*

*ՍՄԿՊ Կենտկոմի դեկտեմբերյան պլենումը ստիպեց նոր ձևով նայել պրոպագանդայի միջոցներին։ Այժմ մեր դիտողական ագիտացիայի կենտրոնում են գտնվում քիմիայի արմատավորման, գյուղատնտեսական արտադրության ինտենսիվացման հարցերը։ Արդեն նախապատրաստվել են քիմիան, նրա օգուտները պրոպագանդող ստենդներ, փակցվել են տրանսպարանտներ, որոնք ցույց են տալիս հանքային պարարտանյութերի, թունաքիմիկատների արդյունավետությունը։*

*Դիտողական ագիտացիայի միջոցները մեզ մոտ դարձել են ոչ միայն նորի, առաջավորի կոլեկտիվ պրոպագանդիստներ ու ագիտատորներ, այլև արտելի տնտեսության վերելքի համար սոցիալիստական մրցության կոլեկտիվ կազմակերպիչներ։*

---



# ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՀՈՒՆԳԱՐԻԱՅԻ ՀԱՋՈՂՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

(Թվեր և փաստեր)

Սովետական և հունգարական ժողովուրդները, մեր պարտիաները կապված են եղբայրության ու բարեկամության հարաբերություններով։ Մեր ժողովուրդները ունեն ընդհանուր իդեալ, մեկ ուղի, մեկ նպատակ՝ կառուցել կոմունիստական հասարակություն։

*Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ*

Այս տարվա ապրիլի 4-ին լրանում է ժողովրդական Հունգարիայի 19-րդ տարեդարձը։ Այդ այն պատմական օրն է, երբ հերոսական Սովետական բանակը լիովին ազատագրեց Հունգարիան ֆաշիստական զավթիչներից, երբ հունգար ժողովուրդը եղբայրական սովետական ժողովրդի օգնությամբ ձեռք բերեց ինքնուրույն պետականություն։ Ազատագրումից և կոնտրռևոլյուցիոն ուժերին ջախջախելուց հետո, պատմական կարճ ժամանակամիջոցում ժողովրդական Հունգարիան իր հարազատ սոցիալիստական բանվորական պարտիայի ղեկավարությամբ հասավ վիթխարի հաջողությունների։ Անա համառոտ տեղեկություններ այդ մասին.

*Նախապատերազմյան մակարդակի համեմատությամբ, ներկայումս երկրում ծանր արդյունաբերության արտադրանքի թողարկումը ավելացել է 8 անգամ։*

*Նույն ժամանակամիջոցում ժողովրդական Հունգարիայում մեքենաշինության արտադրանքն ավելացել է 10 անգամ, իսկ քիմիական արդյունաբերությանը՝ 13—14 անգամ։*

*Եթե անցյալ տարի Հունգարիայի մեքենաշինությունը տվեց ամբողջ երկրի արդյունաբերական արտադրանքի 27 տոկոսը, ապա եկող տարի այն կհասցնի 65 տոկոսի։*

*Միայն հնգամյակի առաջին երկու տարում արդյունաբերական արտադրանքի արտադրությունը ավելացել է ավելի քան 20 տոկոսով։*

Անցյալ տարի ժողովրդական Հունգարիան վեց անգամ ավելի շատ էլեկտրաէներգիա արտադրեց, քան արտադրվում էր կապիտալիստական Հունգարիայում։

Այժմ ժողովրդական Հունգարիայի արդյունաբերության մեջ աշխատում են մոտ 1,5 միլիոն բանվորներ, որոնք ստեղծում են ազգային եկամտի մոտ 60 տոկոսը։

Երկրորդ տարին է, ինչ ժողովրդական Հունգարիայի և Սովետական Միության միջև ստեղծված է բարձր լարվածության էլեկտրամագիստրալ։ Հունգարիայի ձեռնարկությունները ՍՍՌՄ-ից ստանում են լրացուցիչ էլեկտրաէներգիա։

Ներկայումս սոցիալիստական աշխատանքի կոլեկտիվի կոչման համար պայքարում են ավելի քան 30 հազար բրիգադ, որոնցում ընդգրկված են ավելի քան 430 հազար հոգի։

Նշանակալից են հաջողությունները նաև գյուղատնտեսության բնագավառում։ Երկրի վարելահողերի 96,4 տոկոսը մշակում է սոցիալիստական սեկտորը։ Բերքահավաքի 84 տոկոսը կատարվում է մեքենաներով։

Եթե 1958 թվականին մեկ հեկտար ցանքատարածությանը տրվում էր 86 կիլոգրամ արհեստական պարարտանյութ, ապա 1963 թվականին այն հասավ 284 կիլոգրամի։

Նախատեսված է առաջիկա տարիներին գյուղ ուղարկել 20 հազար տրակտոր, երկու անգամ ավելի պարարտանյութ, քան ուղարկվել է 1961 թվականին։

Բարձր զարգացման է հասնելու ջրաշինարարությունը։ Նախատեսված է 1965 թվականին, անցյալ տարվա համեմատությամբ, կրկնապատկել ոռոգելի հողատարածությունը։

Հունգարիայի ժողովրդական տնտեսության զարգացման հեռանկարային պլանով արդյունաբերական արտադրությունը 1961—1981 թվականներին աճելու է 5 անգամ, գյուղատնտեսության արտադրությունը՝ 2—2,5 անգամ, ժողովրդական սպառումը՝ 3,5 անգամ։

Բուռն թափով ծավալվում է բնակարանային շինարարությունը։ Հազար բնակչին հասնող բնակելի տարածությամբ ժողովրդական Հունգարիան առաջ է անցել Անգլիայից, Բելգիայից, Իտալիայից։ Հնգամյա պլանով (1961—1965 թ.թ.) նախատեսված 250 հազար բնակարանի փոխարեն, միայն երկու տարվա ընթացքում կառուցվել է 128 հազար բնակարան։



Ներկայումս Հունգարիայում յուրաքանչյուր 5 մարդուց մեկը սովորում է տարրական և միջնակարգ դպրոցներում։ 1937—1938 թվականների համեմատությամբ ուսանողների թիվն ավելացել է 6 անգամ։

Բժիշկների թվով (10 հազար բնակչի հաշվով) Հունգարիան արդեն դասվում է առաջավոր երկրների շարքին։

Հունգարիայում այս տարվա տվյալներով կան 123 գիտահետազոտական ինստիտուտներ, որտեղ 6 հազար հոգի գիտական աշխատանք են կատարում։

Գնալով անընդհատ աճում է Հունգարիայի միջազգային հեղինակությունը։ Այժմ ժողովրդական Հունգարիան աշխարհի 60 պետությունների հետ ունի դիվանագիտական և 100 երկրների հետ առևտրական հարաբերություններ։

Սոցիալիստական երկրների եղբայրական ժողովուրդների ընտանիքում առաջիկայում ավելի կծաղկի ու կբարգավաճի ժողովրդական Հունգարիան։

---

## ՔԻՄԻԱԿԱՆ ՏԵՐՄԻՆՆԵՐԻ ԲԱՌԱՐԱՆ

*ՔԻՄԻԱԿԱՆ ԹԵԼԵՐ*— Սրանք արհեստական ու սինթետիկ թելեր են, որոնց արտադրության համար բամբակի, բրդի և մետաքսի փոխարեն օգտագործվում են պոլիմերներ։ Արհեստական թելերը (վիսկոզային, ացետատային և պղնձաամոնիակային) ստացվում են բնական պոլիմերների, գլխավորապես ցելյուլոզի (փայտանյութի) քիմիական վերամշակման միջոցով։ Սինթետիկ թելերը՝ կապրոնը, լավսանը, նիտրոնը, պոլիքլորվինիլային թելերը և այլն, ստացվում են քիմիական գործարաններում սինթեզվող պոլիմերներից։

Սինթետիկ թելերն ամբողջովին ստեղծվում են քիմիագործների ուժերով։ Քիմիական թելերի առավելությունը բնական թելերի համեմատությամբ ոչ միայն այն է, որ դրանցից մի քանիսն ունեն ավելի լավ հատկություններ, այլև այն, որ դրանց արտադրության վրա մի քանի անգամ պակաս աշխատանք է ծախսվում։ Քիմիական թելերի որակը և հատկությունները կարելի է փոխել ըստ սպառողների պահանջների։ Միևնույն հումքից ստացվում են տարբեր հատկություններ ունեցող քիմիական թելեր՝ ավտո և ավիադողերի կորդի համար պահանջվող գերամուր թելերից մինչև նուրբ տեքստիլ արտադրանքի համար անհրաժեշտ բարակ թելեր։

# ԹԵՄԱՆԵՐ ԵՎ ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

## 1. Կոմունիզմը սովետական իշխանությունն է՝ պլյուս ամբողջ երկրի էլեկտրիֆիկացումը, պլյուս ժողովրդական տնտեսության քիմիացումը

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

*Վ. Ի. ԼԵՆԻՆ*— Զեկուցում Սովետների համառուսաստանյան VIII համագումարում, 1920 թվականի դեկտեմբերին, *Երկեր, հատոր 31, էջ 653—656, Հայպետհրատ, 1952։*

*Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ*— Քիմիական արդյունաբերության արագ զարգացումը գյուղատնտեսության արտադրության վերելքի և ժողովրդի բարեկեցության բարձրացման կարևորագույն պայմանն է, *զեկուցում ՍՄԿԿ կենտկոմի պլենումում 1963 թվականի դեկտեմբերի 9-ին, տպագրված «Ս. Հ»-ի 1963 թվականի դեկտեմբերի 10-ի համարում։*

*Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ*— Եզրափակման խոսք ՍՄԿԿ կենտկոմի դեկտեմբերյան պլենումում 1963 թվականի դեկտեմբերի 13-ին, *տպագրված «Ս. Հ.»-ի 1963 թվականի դեկտեմբերի 14-ի համարում։*

## 2. Անթերի կենսագործենք ՍՄԿԿ կենտկոմի փետրվարյան պլենումի որոշումները

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

*Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ*.— Հաջողությամբ իրագործել գյուղատնտեսական արտադրության ինտենսիվացման մասին ՍՄԿԿ կենտկոմի փետրվարյան պլենումի որոշումները, *զեկուցում պարտիական, սովետական և գյուղատնտեսական օրգանների ղեկավար աշխատողների խորհրդակցությունում 1964 թվականի փետրվարի 28-ին, տպագրված «Ս. Հ.»-ի 1964 թվականի մարտի 7-ի և 8-ի համարներում։*

Ինֆորմացիոն հաղորդագրություն ՀԿԿ կենտկոմի պլենումի աշխատանքի մասին, *տպագրված «Ս. Հ»-ի 1964 թվականի մարտի 12-ի և 13-ի համարներում։*

*ՅԱ. Ն. ԶԱՐՈԲՅԱՆ*— Ճառ ՀԿԿ կենտկոմի պլենումում 1964 թվականի մարտի 12-ին, *տպագրված «Ս. Հ.»-ի 1964 թվականի մարտի 14-ի համարում։*



## 3. Կազմ ու պատրաստ սկսենք գարնանացանը

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Կուբանցիների և շիրակցիների օրինակով պայքարենք բարձր բերքի ու մթերքների առատության համար, *նյութեր, տպագրված «Ս. Հ.»-ի 1964 թվականի մարտի 1-ի համարում։*

Անցի արտադրական վարչության կոլտնտեսականների, սովխոզների բանվորների, գյուղատնտեսության մեխանիզատորների և մասնագետների սոցիալիստական պարտավորությունները, *տպագրված «Ս. Հ.»-ի 1964 թվականի փետրվարի 29-ի համարում։*

Ավելի լայնորեն ծավալել մրցությունը գյուղում, *«Ս. Հ.»-ի 1964 թվականի մարտի 3-ի առաջնորդողը։*

Արագ բափ գարնանացանի նախապատրաստությանը, *«Ս. Հ.»-ի 1964 թվականի մարտի 5-ի առաջնորդողը։*

Գարնանն ընդառաջ, *նյութեր, տպագրված «Ս. Հ.»-ի 1964 թվականի մարտի 6-ի համարում։*

## 4. Ամեն ինչ տարեկան պլանները 103 տոկոսով կատարելու համար

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

1964 թվականի հարվածային կառույցները, *«Պրավդա» թերթի առաջնորդողը, տպագրված «Ս. Հ.»-ի 1964 թվականի մարտի 1-ի համարում։*

Նոր խնդիրները կկատարվեն, *հոդված, տպագրված «Ս. Հ.»-ի 1964 թվականի փետրվարի 27-ի համարում։*

26 կոմիսարների շրջանի աշխատավորության 1964 թվականի սոցիալիստական պարտավորությունները, *տպագրված «Երեկոյան Երևան»-ի 1964 թվականի մարտի 5-ի համարում։*

## 5. Սովետական կառավարության նոր խաղաղասիրական առաջարկությունները

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

*Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ*— Ուղերձ աշխարհի երկրների պետությունների (կառավարությունների) ղեկավարներին, *տպագրված «Ս. Հ.»-ի 1964 թվականի հունվարի 4-ի համարում։*

ՍՍՌՄ կառավարության հուշագիրը սպառազինությունների մրցավազքը թուլացնելու և միջազգային լարվածությունը մեղմացնելու միջոցառումների մասին, *տպագրված «Ս. Հ.»-ի 1964 թվականի հունվարի 29-ի համարում։*

---

# ԳԻՏՈՒԹՅԱՆ ՆՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

## ՀՈՒՄՔ ԾՈՎԻ ՋՐԻՑ

Ճապոնական «Կուրիտա կոգիո» ֆիրման կառուցել է ծովի ջուրը մշակող մի գործարան: Այդ գործարանի հիմնական նպատակը ծովի ջրից անհրաժեշտ քիմիական նյութեր ստանալն է: Ըստ այդ նոր մշակված տեխնոլոգիայի՝ ծովի ջրի վերամշակումը լայն կիրառում կգտնի քիմիական գործարաններում, թղթի-ցելյուլոզի, մետաղամշակման գործարաններում և արդյունաբերության այլ ճյուղերում:

Միայն 4 միլիոն լիտր ծովաջրի մշակումից գործարանը կտա 3 միլիոն լիտր խմելու ջուր, 108 տոննա եռացած ջուր, 2.2 տոննա գլաուբերյան աղ, 15,9 տոննա մագնեզիում, 16.7 տոննա քլոր և բազմաթիվ այլ օգտակար քիմիական նյութեր:

## ՀԱՆՔԱՅԻՆ ՊԱՐԱՐՏԱՆՅՈՒԹԸ ՀՈՂԻ ՄԵՋ ՄՏՑՆՈՂ ՄԵՔԵՆԱ

Ռումինիայում պատրաստված է հանքային պարարտանյութերը դաշտերում ցրող նոր մեքենա: Այս մեքենան, որը կենտրոնախույս տիպի է, կարող է ցրել ինչպես փոշիացրած, այնպես էլ գրանուլացված պարարտանյութերը: Մեքենան կարող է վերցնել 170 կգ պարարտանյութ, որը ցրում է 14—16 մետր հեռավորությամբ: Մեքենայի մաքսիմալ արագությունը ժամում 12 կիլոմետր է, արտադրողականությունը մեկ ժամում 4—6 հեկտար:

Եթե առաջ 1000 հեկտար պարարտացնելու համար պետք էր 5 հին կոնստրուկցիայով մեքենա, ապա այժմ այդ աշխատանքը կկատարի նոր տիպի միայն մի մեքենա:

## ՅՈՒՂ ԽԱՂՈՂԻՑ

Ձիթայուղը, բամբակի կամ արևածաղկի յուղը վաղուց է հայտնի մարդկությանը, բայց խաղողի յուղը՝ միայն վերջերս: Այդ յուղը ստացել են Բուլղարական Ժողովրդական Ռեսպուբլիկայի գիտնականները՝ խաղողի կորիզի մշակումից:

Խաղողի յուղը ոչնչով չի զիջում մարդկությանը հայտնի լավագույն բուսական յուղերին: Այն իր որակով նման է արևածաղկի յուղին, իսկ համով՝ ձիթապտղի յուղին:




# ՆՈՐ ԳՐՔԵՐ

Ռ. ՍԱԲԱՏԻՆԻ, Նավապետ Բլադի ոդիսականը, 435 էջ, տպաքանակ 15.000, գինը 70 կոպ.:

*Ժամանակակից անգլիական գրող Ռաֆայել Սաբատինիի այս արկածային վեպը գրված է 17-րդ դարի վերջերի պատմական նյութերի հիման վրա: Բժիշկ Պիտեր Բլադը, ծագումով իռլանդացի, իր համար անսպասելի մասնակցում է անգլիական Հակոբ II թագավորի դեմ բռնկված ապստամբությանը, որի պատճառով նրան աքսորում են Վեստ-Ինդիա՝ տաժանակրության: Դաժան ստրկությունից ազատագրվելու միակ միջոցը նա համարում է ծովահեն՝ ծովային ազատ ավազակ դառնալը: Եվ Պիտեր Բլադն իր ընկերների հետ փախչում է գերությունից: Նրանք գրավում են իսպանական մի նավ ու ծովահեններ դառնում Կարաիբյան ծովում: Նավապետ Բլադը գրավում է թագավորական նավեր, բայց այդ նավերի հասարակ նավաստիներին միշտ խնայում է, պայքարում է միայն գաղութաբարների ու թագավորական իշխանության ներկայացուցիչների դեմ:*

ՍՏԱՆԻՍԼԱՎ ԼԵՄ, Մագելլանի ամպը, 437 էջ, տպաքանակ 10.000, գինը 71 կոպ.:

*Ստ. Լեմը կրտսեր սերնդի գրող է, ազգությամբ՝ լեհ, աշխարհի բազմաթիվ լեզուներ թարգմանված գիտա-ֆանտաստիկ վեպերի հեղինակ, որն առաջին տեղերից մեկն է գրավում այդ ժանրով ստեղծագործելու մրցության մեջ: Ժյուլ Վեռնի, Հերբերթ Ուելսի և Կարլ Չապեկի, արևմտյան և սովետական գիտական ֆանտաստիկայի ազդեցությունների, փիլիսոփայության և կիբեռնետիկայի, գիտության և արվեստի խաչուղիներում Ստ. Լեմը գտել է իր անկրկնելի դեմքը, իր ոճը:*

*Իր մտքի ու տաղանդի ամբողջ հարստությունը հեղինակը դրել է «Մագելլանի ամպը» վեպի մեջ, որը նրա գլուխգործոցն է: Այս վեպն իր բովանդակությամբ և բուն էությամբ նորարարություն է, վեպ՝ ապագա կոմունիստական հասարակության մասին: Պատկերելով 32-րդ դարի մարդկանց, գրողը ցույց է տալիս նրանց գործերը՝ գիտության ու տեխնիկայի զարգացումը, բնության լիակատար նվաճումը: Մարդկանց տնօրինության տակ գտնվող էներգիայի անսպառ աղբյուրները թույլ են տվել ոչ միայն բնակեցնել ամբողջ Արեգակնային համակարգությունը, այլև անցնել բնության տիրապետման հաջորդ փուլին՝ մյուս աստղերին հասնելուն:*

*Վեպում նկարագրված իրադարձությունների կենտրոնում գտնըվում է առաջին աստղային արշավախմբի թռիչքը դեպի Կենտավրոսի համաստեղությունը՝ գերվիթխարի տիեզերանավով, որը խորհրդանշային իմաստով կոչվել է «Գեա». այն Երկրի լոկ մի մասնիկն է, ապագա հասարակության փոքրիկ բջիջը:*

Ինդեքս՝ 77704

ОТДЕЛ ИДЕОЛОГИЧЕСКОЙ РАБОТЫ
ЦК КП АРМЕНИИ

# Агитатори блокнот

## № 6

## 1964

Խմբագիր՝ Վ. Խ. ԵՆԳԻԲԱՐՅԱՆ

*ՎՖ 08152* *Պատվեր 236* *Տիրաժ 9493*

*Հանձնված է արտադրության 10/III 1964 թ.:*
*Ստորագրված է տպագրության 12/III 1964 թ.:*

*ՀՍՍՌ Մինիստրների սովետի մամուլի պետական կոմիտեի*
*Պոլիգրաֆարդյունաբերության Գլխավոր վարչության II տպարան,*
*Երևան, Կնունյանցի № 8:*
*Գինը 8 կոպ.:*